Անկարելի է որ մեր երկրին ձեռնհաս պաշտօնատարներէն մէկը նման յայտարարութիւն մը ըրած ըլլայ, քանի որ ոչ միայն Թուրքիա, այլ Ֆրանսայի, Գերմանիոյ եւ Իտալիոյ նման եւրոպական պետութիւններ անգամ պէտք ունին օտար դրամագլուխի:

Թուրքիոյ մէջ այլեւս պատմութեան անցած է այն շրջանը, երբ օտար դրամագլուխին կը հետեւէր քաղաքականութիւնը, որ տխուր դեր կը կատարէր: Նախկին պայմաններով եւ ձեւով գործելու համար Թուրքիա եկող օտարներուն եւ անոնց դրամագլուխներուն առջեւ միանգամընդմիշտ փակ են մեր դռները:

Արդէն նախկին վարչութեան տկարութեան հետեւանքով էր որ օտար դրամագլուխը այդ տ սակ ձեւ մը առած էր Թուրքիոյ մէջ: իսկ Թուրք հանրապետութիւնը որ արեան գնով ձեռք բերած է իր անկախութիւնը, ծայր աստիճան դիւրազգած է այդ ուղղութեամբ: եւ ճիշդ այդ պատճառով է որ միւս ազգերուն հետ մեր հաւասարութիւնը պարտադրեցինք աշխարհին: Հետեւաբար դրամագլուխի խնդիրն ալ տարբեր բնոյթ մը չի կրնար ունենալ: կը նշանակէ թէ նման պարագայի մը մէջ պէտք է ուշադրութիւն դարձնել պայմանագրութեան պայմաններուն եւ մանրակրկիտ քննութիւն կատարել:

կասկած չկայ թէ ամէնէն աւելի օտար դրամագլուխի պէտք ունեցող երկիրներէն մէկն ալ Թուրքիան է: բնականաբար կարելի չէ պնդել թէ Թուրքիա յաւիտեան պիտի կարենայ սեփական միջոցներով գոհացում տալ իր պահանջներուն.

Նկատելով որ հարստութեամբ միայն կարելի է ապահովել երջանկութիւնը, ստիպուած ենք տնտեսական արտակարգ գործունէութիւն ցոյց տալ: Թուրքիոյ տնտեսական ծրագիրներուն իրականացումը միլիառներու կը կարօտի: իսկ Թուրքիոյ պիւտճէն անբաւական է, որովհետեւ անոր մէկ քառորդը արդէն արտասահման կ'երթայ: մէկ խօսքով Թուրքիա վարկի պէտք ունի:»

## Ձմռան աւերները Արեւելքի մէջ

*Պոլիս, 2 մարտ.— Վոսփորի և Մարմարա ծովուն մէջ շոգենաւային երթեւեկները երէկուընէ ի վեր բոլորովին դադրեցան: Ոսկեղջիւրը սառեցաւ: Վոսփորի մէջ խոշոր սառնակոյտեր կազմուած են եւ կը յառաջանան դէպի հարաւ: Ղալաթիոյ կամուրջին առջեւ սառոյցները թումբ մը կազմած են: Բազմաթիւ հետաքրքիրներ կը դիտեն այս անօրինակ տեսարանը:*

*Լեհաստանի եւ արեւելեան կալիցիոյ մէջ սաստիկ ցուրտ կ'ընէ: Ջերմաչափը տեղ տեղ զերոյէն 32 աստիճան վար կը ցուցնէ: Վարշաւայի մէջ, սառնամանիքին պատճառաւ ջուրի նեղութիւն կայ: Վայրաշարժները չեն կրնար ջուր առնել կեդրոնական կայարանէն եւ կը ստիպուին 20 քիլոմեդր ճամբայ կտրել ջուր առնելու համար:*

### ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

*Ռօնի հովիտին մէջ Մարսէյլէն մինչեւ Վալանս, առջի օր աննախընթաց փոթորիկ մը պայթեցաւ: Երկաթուղեի ամբողջ երկայնքին փռուած են արմատախիլ ծառեր, հեռագրասիւներ, երկաթուղային նշանասիւներ եւայլն: Տրամադրելի բոլոր պաշտօնեաներն ու գործաւորները աշխատանքի լծուեցան ճամբան մաքրելու համար: կառախումբերը այս պատճառով մեծ յապաղումներ կրեցին: Վինթիմիլյայի կառախումբը 9.30 ժամ յապաղումով հասաւ Փարիզի կայարանը: Ստիպուեցան Լիոնի մէջ մասնաւոր կառախումբեր կազմել և ճամբայ հանել դէպի Փարիզ:*

*Փոթորիկը աւելի մեծ աւերներ գործած է Նիմի, Նարպոնի եւ Ավինեոնի մէջ: Գիւղի մը եկեղեցիին զանգակատունը թռաւ: Հեռաձայնի հաղորդակցութիւնները ընդհատուեցան: Նիւթական կորուստը անհաշուելի է: Արլի շրջանին մէջ ուրականը շատ սաստիկ էր: Հովը թռցուց կարգ մը տուներու տանիքներն ու ծխնելոյզները: Արլի շրջանին մէջ ձիթենիները մեծ վնասներ կրեցին. յառաջիկայ հունձքը փճացած կը նկատուի:*

*Ծովուն վրայ եւս փոթորիկը մեծ աւերներ կը գործէ:*

## Մասնափորձ Քուպայի նախագահին դէմ

*Հաւանայէն կը հեռագրեն թէ տեղական ոստիկանութիւնը յաջողած է ժամանակին երեւան հանել ընդարձակ դաւադրութիւն մը՝ ուղղուած Քուպայի հանրապետութեան Նախագահ զօր. Ճէրարտօ Մաքատօի դէմ: Ձերբակալուեցան 20 դաւադիրներ, որոնց ծրագիրն էր կառավարութիւնը տապալել եւ իրենք անցնիլ իշխանութեան գլուխը: Դաւադիրներուն մէջ է Նախագահին հօրեղբօրորդին՝ Կուսթավօ Մաքատօ:*

### ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՓԵՇԹԱՅԻ ոստիկանութիւնը երեւան հանեց բոլշեւիկեան նոր կազմակերպութիւն մը: ձերբակալեց 60 համայնավար պրոպագանդիստներ, որոնք յարաբերութեան մէջ էին պերլինի եւ վիէննայի համայնավար կոմիտէներուն հետ: ձերբակալուածներէն չորսը պարագլուխներ են:

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ 10 օրուան ընթացքին (փետր. 11—20) մեռան 2390 հոգի, որոն 54ը արկածով, 12ը անձնասպանութեամբ, 13ը ժանտատենդէ, 60ը կարմրախտէ, 132ը հարսանիթէ, 123ը կեղծմտշկէ եւլն.: Նոյն շրջանին կատարուած է 575 ամուսնութիւն: ծնած են 1318 ողջ երախաներ (653 մանչ եւ 665 աղջիկ): փարիզէն դուրս սէնի նահանգի միւս մասերուն մէջ ծնած են 384 երախայ, մեռած են 375 հոգի:



Le Gérant: E. SOUVIGNY

Նահանգներու սահմանագլուխի հրամանատարէն արտօնութիւն խնդրեց իր զինուորները հաւաքելու ամերիկեան հողի վրայ՝ ժուարեզը վերագրաւելու համար, սակայն մերժուեցաւ: Քաղաքի գրաւման առեն երկուստեք սպաննուեցան բազմաթիւ զինուորներ:

Տասը հազար կառավարական զինուորներ կը յառաջանան դէպի հիւսիս-արեւելք, ուր Նախկին Նախագահ զօր. Քալեէս կը յուսայ վճռական ճակատամարտ մը մղել ապստամբներուն դէմ:

Ապստամբութեան վարիչ զօր. Ակուիրրէ կը հետապնդուի. փախուստի ճամբան կտրուած է. միայն ծովու կողմէն փախչելու հնարաւորութիւն ունի: Հազարապետ Թոփէտօ չորս հազար ապստամբ զինուորներ կեդրոնացուց Սոնորայի եւ Սինալոայի սահմանին վրայ՝ Մեքսիկօի վրայ յարձակելու նպատակով:

Ամերիկեան հեծելազօրքի 7րդ գունդը հրաման ստացաւ էլ-Փազօ մեկնիլ պատերազմական վիճակի մէջ՝ սահմանագլուխը պահպանելու համար:

## Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ԴԻՐՔԸ

Մ. Նահանգներու կառավարութիւնը՝ չէզոքութիւն պահելու համար՝ ապստամբական շարժման առաջին վայրկեանէն իսկ արգիլած էր զէնքի արտածումը դէպի Մեքսիկա:

Ուաշինկթընէն հեռագրի մը համաձայն, Քէլլոկ այժմ արտօնագիրներ կուտայ մասնաւոր տուներու, որոնք կ'ուզեն զէնք ծախել Մեքսիկայի: Անկէ զատ, մեքսիկեան կառավարութեան խնդրանքին վրայ, Մ. Նահանգներու պատերազմական նախարարը հաւանած է աւելորդ ռազմամթերքը ծախել մեքսիկեան կառավարութեան:

## Ռուսիա եւ Ամերիկա

«Թայմզ»ի Ուաշինկթընի թղթակիցը կը հեռագրէ թէ՝ մօտօրէն Նախագահ Հուվըր պիտի զբաղի Մ. Նահանգներու եւ խորհրդային Ռուսիոյ յարաբերութեանց խնդրով:

Ճարտարարուեստական կարեւոր հիմնարկութիւններ արդէն սկսած են որոշ ճնշում բանեցնել՝ դէպի Ռուսիա աւելի մեծ քանակութեամբ դրամագլուխ եւ ապրանք արտածելու համար:

Նորընտիր Նախագահը առանց բոլորովին համակիր ըլլալու Ռուսիոյ հետ դիւանագիտական յարաբերութիւնները վերսկսելու գաղափարին, անկողմնակալութեամբ պիտի քննէ խնդիրը:

Կը ծրագրուի տնտեսագէտ-մասնագէտներու պատուիրակութիւն մը ղրկել Ռուսիա:

Անցած տարի Միացեալ Նահանգներէն Ռուսիա արտածուած է 18 միլիոն 600.000 անգլիական ոսկիի ապրանք, այսինքն միւս բոլոր երկիրներու արտածածէն աւելի, բացի Գերմանիայէն:

## Վարձակալութեան նոր օրէնքը

Երեսփ. ժողովը կը շարունակէ զբաղիլ վարձակալութեան նոր օրէնքով: Վիճաբանութիւնները կարելի պիտի չըլլայ աւարտել ժամանակին, որով եւ նոր օրէնքը պիտի չկրնայ քուէարկուիլ ապրիլ 1ին:

Այս պայմաններուն տակ, կարգ մը երեսփոխաններ մտադրած են պահանջել Խորհրդարանէն, որ ներկայ օրէնքին գործադրութիւնը ամիս մը եւս երկարաձգուի: Այս ձեւով Խորհրդարանը երկար ժամանակ պիտի ունենայ խնդիրը լայնօրէն ուսումնասիրելու եւ բնակարանի տագնապին վերջնական լուծում մը գտնելու համար:

Բազմաթիւ վարձակալներ արդէն մտատանջութեան ենթարկուած են: Մեծ է թիւը անոնց, որոնք ներկայիս աժան վարձք կը վճարեն եւ նոր օրէնքի հիման վրայ պիտի ստիպուին ծանր բեռներու ենթարկուիլ եւ կամ արտաքսուիլ տարիներէ ի վեր իրենց նստած բնակարաններէն: Հանգիստ են միայն անոնք, որոնք պաշտպանուած են 1926ի օրէնքով:

## ԻՆՔՆԱՇԱՐԺԻ ՎԱՐԻՉՆԵՐՈՒՆ ԳՈՐԾԱԴՈՒԼԸ

Ժամանակէ մը ի վեր Փարիզի ինքնաշարժի վարիչները կը գանգատին թէ բաւարար չէ իրենց տրուած շահաբաժինը՝ 100էն 40 եւ կը պահանջեն 100էն 50: Իրենց այս պահանջը գործադրել տալու համար, Մոնրուժի, Մոնմարթրի եւ Լըվալուայի կառատուներու հաշուոյն աշխատող 700 վարիչներ գործադուլ յայտարարեցին:

Ինքնաշարժի տէրերէն ոմանք ընդունեցին այս յաւելումը եւ յոյս կայ որ միւսներն ալ ընդունին: Արհեստակցական Միութիւնը այս առթիւ հրապարակային հաւաքոյթ մը պիտի ունենայ այս գիշեր:

## Երկրաշարժ

Միլանօէն կը հեռագրեն.— Ֆիրէնցէի դիտարանը երէկ առաւօտ ժամը 2.47ին արձանագրեց սաստիկ երկրաշարժ մը, որուն կեդրոնը շատ հեռուն կը գտնուի— մօտաւորապէս 9560 քիլոմեդր հեռու՝ առանց կարենալ ճշդելու բուն տեղը: Կարգ մը նշաններէ կ'եզրակացուի թէ Արեւելքի մէջ պատահած է այս նոր երկրաշարժը:

Ցնցումները արձանագրող գործիքները մօտ չորս ժամ շարժման մէջ էին, ինչ որ ցոյց կուտայ թէ ալիքները քանի մը անգամ աշխարհի շրջանը կատարեցին:












IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant F. SOUVIGNY

բաւորուեցան բազմաթիւ մարդիկ, որոնց մէջ Նաեւ լուծեալ ազգայնական խորհրդարանի անդամներէն եօթը ծերակուտական եւ երեսփոխան ։

## ՍՊԱՆԻՈՅ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ ՑՈՅՑԵՐԸ

Մատրիտէն կը հեռագրեն թէ վարչապետ Փրիմօ տէ Րիվէրայի դէմ ուսանողական ցոյցերը կը շարունակուին եւ հետզհետէ կը ծաւալին։ Շարժումի կեդրոնները երեք են՝ Վալատօլիտ՝ հիւսիսը, Վալէնցիա՝ հարաւ-արեւելքը եւ Մատրիտ՝ մայրաքաղաքը։ Այս երեք քաղաքներուն մէջ ալ առջի օր ուսանողները թափօրներ կազմած շրջեցան փողոցները՝ «Անկցի՜ Րիվէրա» պոռալով։ Մատրիտի մէջ, երբ Ներքին Նախարարութեան մեծ ժամացոյցը իրիկուան 8ը հնչեց, ուսանողներու մեծ բազմութիւն մը, որ նախապէս խռնուած էր քովի փողոցները, սկսաւ շարժիլ դէպի պաշտօնատան հրապարակը։

Վալէնցիայի մէջ փրոֆէսէօրներն ալ ուսանողներուն միացան եւ բողոքագիր մը ղրկեցին Թագաւորին։ Սանթիակոյի մէջ ուսանողները սուլեցին Ազգ. Տնտեսութեան Նախարարը։

Կառավարութիւնը որոշեց խիստ միջոցներ ձեռք առնել, վերջ տալու համար այս կացութեան։ 5000 փէզէթա տուգանքի դատապարտուեցաւ ոստիկան մը, որ քաջալերական խօսքեր ուղղած էր ուսանողներուն, երբ անոնք ցոյց մը կը կատարէին թերթի մը խմբագրատան առջեւ։

## ՄԻՍԻՍԻՓԻ ԴԱՐՁԵԱԼ ԿԸ ՅՈՐԴԻ

Ամերիկայէն հասած լուրերը վրդովիչ տեղեկութիւններ կը հաղորդեն Միսիսիփիի նոր յորդումին մասին, հարաւային շրջաններուն մէջ։ Ինչպէս կը յիշուի 1927ին այս գետը յորդելով ընդարձակ տարածութիւններ ողողած էր՝ թշուառութեան մատնելով բազմահազար բնակչութիւն։

Նոր ողողումները տեղի կ'ունենան մասնաւորաբար Ալապամայի նահանգին մէջ։ Մոնթկոմէրիէն ոչ հեռու, Փի գետի թումբը քանդուելով, աղետալի հետեւանքներ ունեցաւ։ Էլպա քաղաքի ամբողջ բնակչութիւնը, մօտ 4000 հոգի, ջուրերով բաժնուած է աշխարհէն։ Քաղաքին ցած տեղերուն մէջ ջուրը մինչեւ 6 մեդր բարձրութեան հասած է։ Դպրոցի մը 350 աշակերտները շէնքին երկրորդ յարկին վրայ բանտարկուած կը մնան։ 500 բնակիչներ ապաստանեցան Արդարութեան պալատի վերի յարկերը եւ 300 հոգի կրցան առժամաբար իրենց կեանքերը ազատել՝ կիսովին ողողուած տուներու ամենաբարձր սենեակներուն մէջ իրարու վրայ դիզուելով ։

Մօտ 20 գիւղաքաղաքներու 10,000 բնակիչները ամբողջովին պաշարուած են ջուրերէ՝ Նահանգին հարաւ-արեւելեան կողմէն։ Կառավարիչը անթելով ստիպողական օգնութիւն խնդրեց։ Ազգային պահակներ, բժիշկներ եւ հիւանդապահուհիներ ղրկուեցան աղէտեալ շրջանը, սակայն յոյս չկայ որ կարենան հասնիլ աղէտեալներուն, որովհետեւ Էլպա եւ մի․ս վայրերը տանող ճամբաները անանցանելի են։ Օդանաւորդ մը սաւառնեցաւ Քասթէլպէրրիի վերեւ եւ լուր բերաւ թէ քաղաքը ամբողջովին քանդուած է։

Հեռագրի մը համաձայն, 250 հոգի խեղդուելով մեռած են Էլպայի մէջ եւ հարիւրաւոր հոգի մահուան վտանգին ենթարկուած են որովհետեւ գիրենք պատսպարող պանդոկ մը փլած է։

## "ԽՐՈՆԻՔԱ„ՅԻ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Պոլսոյ Պատժական Ա. Ատեանին առջեւ շարունակուեցաւ այն դատը, որ բացուած է «Խրոնիքա» յունարէն թերթի պատ. տնօրէն Տիկին Էլէնիի եւ արտօնատէր Քէշիշ օղլուի դէմ, իբրեւ թրքութիւնը անարգողներ։ Նախորդ նիստին, որոշուած էր Համալսարանի հելլէնական եւ հռոմէական պատմութեան ուսուցիչ Ֆազըլ Նազմի պէյին հարցնել թէ «աղրիէթէրա» բառը «վայրենութի՞ւն» կը նշանակէ, թէ ուրիշ իմաստ մը ունի։

— «Ագրոս» բառը, ըսաւ դասախօսը, հին յունարէնի մէջ «անմարդաբնակ վայր» կը նշանակէ. իսկ «աղրիօսի» գիւղի մէջ բնակող, քաղաքակրթութենէ հեռու մնացող։ Նոր յունարէնի մէջ, այդ բառը «ահաւոր»ի, «զարհուրելի»ի իմաստն ունի, իսկ երբ նկատի առնենք «Խրոնիքա»յի թերթօնին նախընթաց մասը, կը հետեւի թէ «աղրիէթէրա» բառը «վայրենութիւն» կը նշանակէ ։

Տիկին Էլէնի պատասխանեց թէ չէր գիտեր այդ իմաստը ունենալը, ապա թէ ոչ չէր գրեր։ Գալով այն հատուածին ուր բսուած է թէ «Իզմիրի ողբերգութիւնը կը նշանակէ վերադարձը դէպի նախնական շրջանները», Ֆազըլ Նազմի պէյ յայտնեց թէ որոշ չէ ակնարկութիւնը։ Թրքութեա՞ն համար կ'ըսուի թէ ուրիշի մը, չի կրնար ճշդել։

Դատավարութիւնը կը շարունակուի։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Խաչիկ Մարտիրոսեան, հօր անուն՝ Մարտիրոս Մուրատեան (Մշեցի) կը փնտռէ իր քոյրերը Զարուհի, Արաքսի եւ իր եղբայրը Գէորգ Մուրատեան, որոնցմէ որեւէ լուր ստացած չէ, Իզմիրի աղէտէն ի վեր։ Իմացնել իրենց եղբօր՝ Խաչիկ Մարտիրոսեանի, 59 Rue des Petites Mariées, Marseille.




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: F. SOUVIGNY

## Հնդկաստանի խռովութիւնները

Անգլիական Հնդկաստանի մէջ խռովութիւնները կը շարունակուին։ Տումարոնրաժի շրջանին մէջ կռիւի մը ընթացքին սպաննուեցան կառավարական երկու պաշտօնեաներ եւ վիրաւորուեցան 6 հոգի, երբ 500 զինեալ մարդեր յարձակեցան պաշտօնեաներու խմբակի մը վրայ։

Բազմաթիւ համայնավար եւ ընկերվարական գործիչներ ձերբակալուեցան։ Գործադուլը կը շարունակուի կարգ մը գործարաններու մէջ։ կացութիւնը դեռ չէ խաղաղած։

## Սերպ բանակին վերակազմութիւնը

Պելկրատէն կը հաղորդեն որ եուկոսլաւ բանակին բոլոր զօրավարները Պելկրատ հրաւիրուած են՝ մասնակցելու համար ժողովի մը, որ պիտի զբաղի բանակի վերակազմութեան խնդրով։

Խաղաղութեան ատեն Եուկոսլաւիոյ զինուորներուն թիւն է 130,000, պատերազմի ատեն՝ 250,000։



## ԶՈՒԱՐԹՆՈՑ

Այսօր Կիր. հրապարակ կ'ելլէ Բ. ԹԻԻԸ, 48 մեծադիր էջերով եւ 18 գեղարուեստական նկարներով։ Յօդուածներ ունին.— Օշական, Զարեան, Թէքէեան, կ. Համսուն (Թարգմ.) Թորամանեան, Յ. Պարոնեան (անտիպ), Արաքսի Թորոսեան, Շ. Նարդունի, Ն. Պէշիկթաշլեան, գ. Մխիթարեան, վ. Թաթուլ, ե. Այվազեան, Հ. Սարգիսեան, Յ. Ֆրէնկեան, Հ. Բալուեան, Ա. Տատրեան, Ն. Սարաֆեան։ Բազմաթիւ գրախօսականներ, համայնապատկեր ազգերու գրականութեան եւ Փարիզի գեղարուեստական շարժումը։

Բաժանորդագրութեան եւ հատավաճառութեան համար դիմել՝ H. Palouianի, Boîte Postale No. 50, Paris (10e). Տարեկան 10 թիւի համար 50 ֆրանք, հատը 7 ֆրանք։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: F. SOUVIGNY

Հաշիւ եղած է որ ցարդ գրաւուած հելլենահպատակներուն կալուածներէն, ինչպէս նաեւ նոր գրաւուելիքներէն ամսական իբր 20 հազար ոսկի վարձք պիտի գանձուի։ Այս գումարը կանոնաւորապէս ոչ-փոխանակելիներուն պիտի բաշխուի։

Ցարդ դիզուած վարձքերուն գումարը Թուականի կարգով պիտի բաշխուի եւ առաջին անգամ հարիւր հինգ հոգի պիտի օգտուին։ Իսկ երկրորդ բաշխումը պիտի կատարուի առաջինին լրանալէն եւ այդ 105 ոչ-փոխանակելիներուն կացութիւնը ճըշդուելէ վերջ։

## ԹՈՒՐՔԵՒՀԵԼԼԷՆ ՎԷՃԸ ԿԸ ԾԱՆՐԱՆԱՅ

Աթէնքէն կը հեռագրեն թէ հելլէնեւթուրք յարաբերութիւնները դարձեալ լարուած են։ Թուրք կառավարութիւնը Պոլսոյ մէջ գրաւեց հելլէնահպատակ նոր կալուածներ, ոտնակոխ ընելով 1926ի հելլէնական համաձայնագիրը։ Առանց ականջ կախելու Էնկիւրիի հելլէն դեսպանին կրկնակ դիմումներուն եւ արտաքին Նախարար Թէվֆիք Րիւշտի պէյի տուած հաւաստիքներուն, Թուրք իշխանութիւնները մարտ 22ին գրաւեցին հելլէն քաղաքացիներու պատկանող գոյքերը։

Աթէնքի քաղաքական շրջանակներուն մէջ կացութիւնը շատ կնճռոտ կը նկատեն եւ կը հետեւցնեն թէ վերջերս սկսուած հելլէնեւթուրք բանակցութիւնները անխուսափելիօրէն պիտի վիժին։

## Տրոցկի թրքասէր

Պոլսոյ *Միլլիէթ* թերթի խմբագիրներէն մէկը, որ 1916ին Նիւ-Եորքի մէջ հանդիպած էր Տրոցկիի — այն ատեն Լէոն Պրոնշթայն— տեսակցութիւն մը ունեցած է անոր հետ։ Տրոցկի ըսած է.

— *Թուրք կառավարութիւնը շատ մեծ ասպնջականութիւն ցոյց տուաւ ինծի, շատ շնորհակալ եմ։ Հոս եկած ատենս չէի գիտեր թէ ի՞նչպէս պիտի ընդունուիմ։ Թուրքիա ոչ մէկ ատեն ազատութիւնս չէ կապտած։ Խորհրդային հիւպատոսարանը գտնուած ատենս չուզեցի ընդունիլ օրագրողները, որովհետեւ հոն պաշտօնատուն մըն էր։ Հիմա ազատ կրնամ ամէն ոք տեսնել։ Թուրքերէնէն մեկնիլ ուզելուս պատճառը լեզուն չգիտնալս է։ Հիմա ծեր եմ եւ չեմ կրնար լեզու սորվիլ։ Այլապէս կ'ուզէի մնալ հոս քանի որ շատ կը սիրեմ Թուրքիան։ 1909ին եւ անկէ վերջ գրած յօդուածներուս մէջ այնքան գոված եմ Թուրքերը որ ինծի Թրքասէր ըսած են։ Շատ.գոհ մնացի միլլի պայքարին յաղթանակէն։ Դուք ձեր անկախութիւնը Ղազիին կը պարտիք որու մեծութիւնը աշխարհ ընդունած է։ Ես ալ հաճոյքով կը կրկնեմ այս ճշմարտութիւնը։*

*Թուրքեւխորհրդային յարաբերութիւնները միշտ սիրալիր եղած են եւ պիտի ըլլան։ Մաղթելի է որ առեւտրական եւ տնտեսական յարաբերութիւններն ալ զարգանան։ Ոմանք զիս հակաբոլշեւիկ կը կարծեն, մինչ ընդհակառակն ես կուսակից եմ խորհրդային կարգերու։ Միայն թէ ո՛չ բռնի այլ օրինական միջոցներով կ'ուզենք այժմու կառավարութեան ներքին եւ արտաքին քաղաքականութիւնը փոխել։»*

Յետոյ միջազգային քաղաքականութեան վրայ խօսելով, Տրոցկի աւելցուցած է.

*«Աշխարհ դէպի պատերազմ կը քալէ։ Գուցէ 3, 5 եւ կամ 10 տարիէն։ Բայց ամէն պարագայի մէջ պատերազմը պիտի սկսի եւ այս անգամ պիտի ըլլայ անգլեւամերիկեան։*

*Թերեւս առաջին անգամ Անգլիոյ եւ Ամերիկայի միջեւ չոկսի։ Ամերիկա ուր որ ձեռք երկնցնէ դէմը, կը գտնէ Անգլիան։ Հիմա ծովերու տիրապետել կ'ուզէ։ Քէլլոկի դաշինքն ալ պատերազմը պիտի փութացնէ։ Քանի որ բան մը չարգիլեր։»*

## Տրոցկիի նոր գործերը

*Պոլիս 25 մարտ.— Մոսկուայի «Պրաւդա»ն ամբաստանած էր Լեւ Տրոցկին թէ իր գրական երկերը կը ծախէ օտար ոսկիի փոխարէն։ Այս առթիւ Տրոցկի կը յայտարարէ թէ անձնապէս բնաւ չպիտի օգտուի իր յօդուածներուն համար ստացած ահագին գումարէն։ Այս ձեւով շահած բոլոր դրամները պիտի յատկացնէ հրատարակութեանը իր կարգ մը գործերուն, որոնք կիսատ մնացած են։ Տրոցկի պիտի գրէ գիրք մը Լէնինի վրայ, համայնավար կուսակցութեան պատմութիւնը եւ բոլշեւիկներու թշնամիներուն դէմ իր պատասխանը։*

## Անիշխանութիւնը Աֆղանիստանի մէջ

*«Տէյլի Թէլէկրաֆ»ի Փէշավարի թղթակիցը կը հեռագրէ թէ Ամանուլլահ զինուոր թնդանօթ ղրկեց Քէլաթի Ղիլզայի, իբրեւ յառաջապահ այն բանակին, որ շուտով պիտի քալէ Քապուլի վրայ։ Այս զօրամասը սակայն Մոքուրի մօտ յարձակում կրեց Հազարա ցեղախումբին կողմէ, որ կուսակից է Պեչէի Սաքայի։ Այս առթիւ տեղի ունեցած ընդհարումին մէջ երկու կողմերն ալ մեծ կորուստներ կրեցին։*

Թեհրան *25 մարտ.— Ամանուլլահ թագաւորին կողմէ երկու պատգամաւորներ ղրկուեցան Մոսկուա՝ մասնաւոր պաշտօնով մը։ Այս պատգամաւորները արտաքին Նախարարութեան մէջ կարեւոր պաշտօններ կը վարէին Ամանուլլահի օրով։ Պատգամաւորները անցան Թեհրանէն եւ պարսիկ իշխանութեանց հետ ալ տեսակցեցան։ Չի գիտցուիր թէ խօսակցութեան նիւթը ի՞նչ էր։*

## Իշխան Կարոլ եւ մայրը հաշտուած

*Ռումանիոյ Մարիա թագուհին որ ներկայիս Ֆրանսա կը գտնուի, իր տղուն՝ Ռումանիոյ նախկին գահաժառանգ Կարոլի Սէն-Պրիաքի ապարանքը երթալով տեսակցութիւն մը ունեցաւ անոր հետ։ Կը կարծուի թէ մայր ու որդի հաշտուած են*

*Այս հաշտութիւնը սակայն քաղաքական ո և է նշանակութիւն չունի։*

## Յիսուն հոգի ձերբակալուած Ջաղրէպի մէջ

*Ջաղրէպի մէջ լրագրապետ Թոնի Շլէկէլի սպանութեան առթիւ 50 հոգի ձերբակալուեցան։ Կացութիւնը, որ քիչ մը խաղաղած էր վերջերս, դարձեալ խանգարուեցաւ։ Աղեքսանդր թագաւորը անձամբ հրամայեց քննութիւն կատարել ոճիրին մասին, հրահանգ տուաւ նախարարներուն անմիջապէս դէպքին վայրը երթալ եւ վարել քննութիւնները։*

*Հակասերբ զգացումը այնքան շեշտուած է Ջաղրէպի մէջ, որ թագաւորը ստիպուեցաւ յետաձգել իր յառաջիկայ այցելութիւնը դէպի Խրուաթիոյ մայրաքաղաքը։*

*Ոստիկանութիւնը այն համոզումն ունի թէ ոճրագործները կը գտնուին ձերբակալուած 50 հոգիին մէջ։*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant E. SOUVIGNY

Իրիկունը մեծ հացկերոյթ մը տրուեցաւ անգլիացի հիւրերուն ի պատիւ։ Ներկայ էին խորհրդային տնտեսական բազմաթիւ ներկայացուցիչներ։

Առեւտրական սենեակի նախագահ Խինջուք բարի գալուստ մաղթեց Անգլիացիներուն։ Յայտարարեց թէ անգլ. հրապարակին վրայ խորհրդային ապրանքներու նուազումը եւ այդ նուազումին առաջ բերող պատճառները նոյնքան խորունկ վիշտ պատճառած են խորհրդային իշխանութեանց, որքան անգլ. ձեռնարկներու ներկայացուցիչներուն որոնք ներկայ են։

Անգլիացիներուն կողմէ պատուիրակութեան նախագահ Բէմնէնթ շնորհակալութիւն յայտնելէ յետոյ ըսաւ.

— Պատուիրակութեան նպատակն է ամուր հիմ մը հաստատել տնտեսական յարաբերութիւնները զարգացնելու համար։ Կազմակերպիչները համոզուած են թէ այդ հիմը պիտի կրնայ գտնուիլ, ի մեծ գոհացում երկու երկիրներու եւ թէ նպաստաւոր արդիւնքներու պիտի հասնին երկուշաբթի օր սկսելիք բանակցութիւնները՝ պատուիրակութեան եւ խորհրդային իշխանութեանց ներկայացուցիչներուն միջեւ։

## «Կոմս Ցեփլին»ի վերադարձը

Ինչպէս գրեցինք երէկ, գերման ղեկաւոր օդապարիկը յաջողութեամբ վերջացուց իր թռիչքը եւ առջի առաւօտ վերադարձաւ իր կայանը։ Ցէփլինը 82 ժամ մնաց օդին մէջ եւ կտրեց 10,000 քիլոմեդր ճամբայ։

Ճամբորդները վերջին ծայր գոհ մնացած են այս նոր թռիչքէն, որ հաճելի էր՝ հակառակ ծանր դժուարութեանց։ Սփալաթօի մէջ օդապարիկը այնպիսի սաստիկ փոթորիկի բռնուեցաւ, որ ժամական արագութիւնը 50 քիլոմեդրի իջաւ։ Լեռները կ'արգիլէին զինքը փախչիլ փոթորիկէն։ Աւելի նպաստաւոր ճամբայ մը գտնելու համար ստիպուեցաւ քանիցս բարձրութիւն փոխել։

Ճամբորդներն ու նաւաստիները շատ մսեցան։ Հեղեղանման անձրեւ կը տեղար օդապարիկին վրայ։ Միայն Աւստրիոյ վերեւ է որ լաւ օդի հանդիպեցան եւ բնականոն թռիչք ունեցան։ Հարաւային Գերմանիոյ մէջ թանձր մառախուղի մէջ ինկան. 1500 մեդր բարձրութեան վրայ ցուրտը անհոլի էր։ Տոքթ. Էքէնէր ստիպուեցաւ մինչեւ 200 մեդր վար իջնել։ Ճամբորդութեան վերջին մասը միշտ ուղեցոյցով տեղի ունեցաւ։ Վիեննայի վրայէն անցած ատեն, Ռայխսթակի ընկերվարական նախագահ Լէօպէ անթելով խանդավառ ճառ մը խօսեցաւ Վիեննացիներուն։ Վիեննայի մօտերը գտնուեցաւ թղթատարի պարկ մը, մէջը պարապ։ Չարագործներ գտած էին զայն եւ մէջինները գողցած։

*** «Կոմս Ցէփլին» վերադարձին կը սպասուէր նաեւ Պոլիս, ուր ժողովուրդը օրերէ ի վեր կը պատրաստուէր խանդավառ ընդունելութիւն ընել օդերու հսկային։ Աթէնք հասնելէ վերջ, Տոքթ. Էքէնէր ուղղուեցաւ դէպի Պոլիս. սակայն հովը այնքան սաստիկ էր, որ ցէփլինը չէր կրնար յառաջանալ. ուստի եւ Աթէնք վերադարձաւ՝ հրաժարելով Պոլիս հանդիպելէ։ Յետոյ Տալմացիոյ եզերքը քերելով անցաւ կեդրոնական Եւրոպա։

## Մարաջախտ Ֆոշի յաջորդը

Զինադադարէն ի վեր, մարաջախտ Ֆոշ կը նախագահէր «Դաշնակից զինուորական կոմիտէ»ին, որուն կ'անդամակցէին անգլիացի, պելժ, ֆրանսացի, իտալացի եւ ճափոնցի սպաներ։ Այս մարմինը դեսպանախորհուրդին մօտ մասնագէտ խորհրդատուի դեր կը կատարէր եւ կը հսկէր հաշտութեան դաշնագրերու զինուորական յօդուածներուն գործադրութեան։ Ֆոշ իր ժամանակին մեծ մասը կը յատկացնէր այս մարմնի գործերուն եւ խորհրդականը դարձած էր դեսպանախորհուրդին։ Հանգուցեալ մարաջախտը միեւնոյն ժամանակ անդամ էր Պատերազմական Գերագոյն Խորհուրդին, որուն նախագահն է պատերազմական նախարար Փէնլըվէ եւ փոխ-նախագահը՝ մարաջախտ Փէթէն։

Կը կարծուի թէ Ֆոշի տեղ մարաջախտ պիտի անուանուի զօրավար Վէյկան, Սուրիոյ նախկին մարզպանը, որ մեծ համբաւ կը վայելէ իբրեւ կարող զինուորական։

*** Կառավարութիւնը որոշեց տարեկան 100,000 ֆրանքի թոշակ յատկացնել Ֆոշի ընտանիքին, բացի ըստ օրինի անոր ստանալիք թոշակէն։ Այս գումարը պիտի տրուի, մինչեւ որ մարաջախտին թոռները չափահաս դառնան։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: F. SOUVIGNY




**ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ**

Ի նպաստ Պէլվիլի մէջ բացուելիք Մանկապարտէզի ֆոնտին
կազմակերպուած «Ռոստոմ» միութեան կողմէ
վաղը կիրակի գիշեր ժամը 9էն մինչեւ առաւօտ: Chalet Edouardի շքեղ սրահներուն մէջ, 31—33 Rue Manin et 94 Ave. Secrétan, մէթրօ՝ Bolivar եւ Combat, թրամ. 26։

Կը նախագահէ՝ Ընկ. Կ. ԹԱՆՏՐՃԵԱՆ
Կը բանախօսէ՝ Ընկ. Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Mlle Cecile Vigouroux (ջութակ), Օր. Ճամպազ (դաշնակ), Ընկ. Շ. Սարեան (արտասանութիւն), Գազազեան քոյրեր (կովկասեան պարեր) եւ Վրացի կինտոն (վրացական պարեր), մանկական արտասանութիւններ եւ խաղեր։ Հայկական եւ եւրոպական պարեր, ճաշ պանտ։

Կը ներկայացուի՝ «ՎԱՐՏԱԼԱՊՈՆՊԱ» զաւեշտ
ՄՈՒՏՔ՝ 10 ՖՐԱՆՔ

**ԶԱՏԿԻ ԱՌԹԻՒ ԵՐԵԿՈՅԹ-ԽՆՋՈՅՔ**

Կազմակերպուած եօզկատի եւ շրջանի Հայր. Միութեան փարիզի մասնաճիւղին կողմէ։ Այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8էն մինչեւ կէս գիշեր 18 Rue des Envierges, Մէթրօ՝ Couronne.

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ**

Այսօր Շաբաթ ժամը 2ին Սինէմա Նովէլթիի մէջ
Մ. Մարութեանի «ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ»

**ՀԱՒԱՔՈՅԹ ՔԼԱՄԱՌԻ ՄԷՋ**

Ուրֆայի Հայր. Միութեան հաւաքոյթը վաղը կիրակի կէս օրէ վերջ ժամը 1-23, Ս. Եօթնեղբայրեանի տունը, 41 Rue de Fontenay, Clamart (Seine)։ Առնել՝ Թրամ. 89 Օթէլ տը Վիլէն եւ իջնել՝ փոսթ Քլամառ։ Կը հրաւիրուին անդամներն ու փարիզի Ուրֆացիները։

